Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 19 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

# ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

## „ՊՐԱՎԴԱ"-Ի ԹՂԹԱԿՑԻՆ ԱՏՈՄԱՅԻՆ ԶԵՆՔԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

ՀԱՐՑ: Ի՞նչ կարծիք ունեք Դուք այն աղմուկի մասին, որ օրերս բարձրացել է օտարերկրյա մամուլում Սովետական Միությունում ատոմային ռումբ փորձարկելու կապակցությամբ:

ՊԱՏԱՍԽԱՆ: Իրոք, վերջերս մեզ մոտ կատարվեց ատոմային ռումբի տեսակներից մեկի փորձարկում: Անգլո-ամերիկյան ագրեսիվ բլոկի հարձակումից մեր երկիրը պաշտպանելու պլանի համաձայն, տարբեր տրամաչափի ատոմային ռումբերի փորձարկում կկատարվի նաև առաջիկայում:

ՀԱՐՑ: Ատոմային ռումբի փորձարկման կապակցությամբ ԱՄՆ-ի զանազան գործիչներ տագնապ են բարձրացնում և աղմկում են ԱՄՆ-ի անվտանգությանն սպառնացող վը-

տանգի մասին: Կա՞ արդյոք որևէ հիմք այդպիսի տագնապի համար:

ՊԱՏԱՍԽԱՆ: Այդպիսի տագնապի համար ոչ մի հիմք չկա:

ԱՄՆ-ի գործիչները չեն կարող չիմանալ, որ Սովետական Միությունը ոչ միայն դեմ է ատոմային զենքի գործադրմանը, այլև կողմնակից է նրա արգելմանը, կողմնակից է նրա արտադրության դադարեցմանը: Ինչպես հայտնի է, Սովետական Միությունը մի քանի անգամ պահանջել է արգելել ատոմային զենքը, բայց նա ամեն անգամ մերժում է ստացել Ատլանտյան բլոկի տերություններից: Այդ նշանակում է, որ մեր երկրի վրա ԱՄՆ-ի հարձակման դեպքում ԱՄՆ-ի կառավարող շրջանները կգործադրեն ատոմային ռումբ: Հենց այդ հանգամանքն էլ Սովետական Միությանն ստիպեց ունենալ ատոմային զենք՝ ագրեսորներին լիակատար պատրաստությամբ դիմավորելու համար:

Իհարկե, ագրեսորներն ուզում են, որպեսզի Սովետական Միությունը անզեն լինի՝ իր վրա նրանց հարձակման դեպքում: Բայց Սովետական Միությունը դրան համաձայն չէ և կարծում է, որ ագրեսորին պետք է դիմավորել լիակատար պատրաստությամբ:

Հետևապես, եթե ԱՄՆ-ը մտադիր չէ հար-



ձակվել Սովետական Միության վրա, ԱՄՆ-ի գործիչների տագնապը պետք է համարել անառարկայական ու կեղծ, որովհետև Սովետական Միությունը մտադիր չէ երբևիցե հարձակվել ԱՄՆ-ի կամ որևէ այլ երկրի վրա:

ԱՄՆ-ի գործիչները դժգոհ են այն բանից, որ ատոմային զենքի գաղտնիքին տիրապետում է ոչ միայն ԱՄՆ-ը, այլև ուրիշ երկրներ, և ամենից առաջ՝ Սովետական Միությունը: Նրանք կցանկանային, որպեսզի ԱՄՆ-ը լիներ ատոմային զենքի արտադրության մոնոպոլիստը, որպեսզի ԱՄՆ-ը անսահմանափակ հնարավորություն ունենար ահաբեկելու ու շանտաժի ենթարկելու մյուս երկրներին: Բայց, ինչպես ասած, ի՞նչ հիման վրա են նրանք այդպես մտածում, ի՞նչ իրավունքով: Մի՞թե խաղաղության պաշտպանման շահերը պահանջում են նման մոնոպոլիա: Ավելի ճիշտ չի՞ լինի արդյոք ասել, որ բանը հենց հակառակն է. որ հենց խաղաղության պահպանման շահերը պահանջում են ամենից առաջ վերացնել այդպիսի մոնոպոլիան, իսկ ապա նաև անպայման արգելել ատոմային զենքը: Ես կարծում եմ, որ ատոմային ռումբի կողմնակիցները կարող են ատոմային զենքի արգելմանը համաձայնել

միայն այն դեպքում, երբ նրանք տեսնեն, որ իրենք այլևս մոնոպոլիստներ չեն:

ՀԱՐՑ: Ի՞նչ կարծիք ունեք Դուք ատոմային զենքի գծով միջազգային վերահսկողության վերաբերյալ:

ՊԱՏԱՍԽԱՆ: Սովետական Միությունը կողմնակից է ատոմային զենքի արգելմանը և ատոմային զենքի արտադրության դադարեցմանը: Սովետական Միությունը կողմնակից է միջազգային վերահսկողություն հաստատելու այն բանի նկատմամբ, որպեսզի ատոմային զենքն արգելելու, ատոմային զենքի արտադրությունը դադարեցնելու և արդեն արտադրված ատոմային ռումբերը բացառապես քաղաքացիական նպատակներով օգտագործելու վերաբերյալ որոշումը կատարվի ամենայն ճշգրտությամբ ու բարեխղճությամբ: Սովետական Միությունը կողմնակից է հենց այդպիսի միջազգային վերահսկողության:

Ամերիկյան գործիչները նույնպես խոսում են «վերահսկողության» մասին, բայց նրանց «վերահսկողությունը» ելնում է ոչ թե ատոմային զենքի արտադրությունը դադարեցնելուց, այլ այդպիսի արտադրությունը շարունակելուց, ընդսմին այն քանակությամբ, որը համապատասխանում է այս կամ այն երկրի



տրամադրության տակ գտնվող հումքի քանակությանը: Հետևապես, ամերիկյան «վերահսկողությունը» ելնում է ոչ թե ատոմային զենքի արգելումից, այլ նրա լեգալացումից և օրինականացումից: Դրանով իսկ օրինականացվում է պատերազմի հրձիգների իրավունքը ատոմային զենքի օգնությամբ բնաջնջել տասնյակ ու հարյուր հազարավոր խաղաղ բնակիչներ: Դժվար չէ հասկանալ, որ դա ոչ թե վերահսկողություն է, այլ ծաղր ու ծանակ վերահսկողության նկատմամբ, ժողովուրդների խաղաղասիրական իղձերի խաբեություն: Հասկանալի է, որ այդպիսի «վերահսկողությունը» չի կարող բավարարել խաղաղասեր ժողովուրդներին, որոնք պահանջում են արգելել ատոմային զենքը և դադարեցնել նրա արտադրությունը:

(«ՊՐԱՎԴԱ», 6 նոյեմբերի)

# ՄԵՔԵՆԱՅԱՑՈՒՄԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՄԵԾ ԿԱՌՈՒՑՈՒՄՆԵՐՈՒՄ

*Կոմունիզմի մեծ կառուցումներում հողային, բետոնային, մոնտաժային և շինարարական այլ աշխատանքների ծավալը աստղաբաշխական թվերի է հասնում։*

*Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի կառուցման համար պատրաստվելու է 6 միլիոն խորանարդ մետր բետոն, երկաթ-բետոն, իսկ Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանի կառուցման համար՝ 7 միլիոն խորանարդ մետր։ Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանի բուռն շինարարության շրջանում օրական պատրաստվելու է 16 հազար խորանարդ մետր բետոն, հիդրոէլեկտրակայանի հանգույցի կառուցման ժամանակ հանվելու և տեղափոխվելու է 600 միլիոն խորանարդ մետր հող։ Եթե այդքան հողը լցնենք վագոնների մեջ, ապա կպահանջվի այնքան, որով կարելի կլինի երկրագնդի շուրջը 16 վագոնային գոտի կապել (երկրագնդի գոտին հավասար է 40 հազար կիլոմետրի)։ Հարավ-*



*Ուկրաինական, Հյուսիս-Ղրիմյան ջրանցքների հողային աշխատանքների ծավալը հավասար է 800 միլիոն խորանարդ մետրի։ Դա հսկայական հողային մի զանգված է, որով կարելի է Բելգիայի տերիտորիան ծածկել մոտ 3 սանտիմետր հաստության հողաշերտով։ Կոմունիզմի մեծ կառուցումներում հողային աշխատանքների ծավալը 2 միլիարդ խորանարդ մետրից ավելի է։*

*Հինգ—վեց տարի հետո, երբ կոմունիզմի կառուցումները կավարտվեն, ջրովի և ոռոգելի կդառնա 28 միլիոն հեկտար հողամաս, որը երեք անգամ ավելի է Ամերիկայի Միացյալ Նահանգների ոռոգվող հողերից (որին նրանք հասել են 100 տարում)։ Դրանով ՍՍՌՄ-ն կստանա երկու և կես անգամ ավելի բերք, քան այժմ է ստանում։ Միայն Ստալինգրադյան հիդրոհանգույցի կառուցումից հետո Սարպինսկի և Նողայական տափաստաններից կհավաքվի 5 միլիոն տոննա խոտ։ Կանցնի մի քանի տարի և այդ երկրամասը կդառնա ոչխարաբուծության համաշխարհային կենտրոն, որը կգերազանցի Ավստրալիային։*

*Կոմունիզմի մեծ կառուցումներով հնարավոր կդառնա հսկայական տարածության վրա էլեկտրիֆիկացնել և ավտոմատացնել երկա-*

թուղային տրանսպորտը և արդյունաբերության բազմաթիվ ճյուղեր: Նավարկելի ջրանցքների երկարությունը կհասնի 4.500 կիլոմետրի: Կոմունիզմի կառուցումներով ՍՍՌՄ-ն տարեկան կստանա 22 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, որով նա տարեկան կտնտեսի 45 միլիոն տոննա վառելիք: Այդքան էլեկտրաէներգիան հավասար է ԱՄՆ-ի այժմ գործող 30 հզոր էլեկտրակայանների արտադրած էլեկտրաէներգիայի չափին:

Վիթխարի են կոմունիզմի կառուցումները. սովետական գիտնականները կոմունիզմի մեծ կառուցումների հետևանքով առաջացած փոփոխությունները համեմատում են գեոլոգիական պրոցեսների հետ, որոնց ընթացքում հողաշերտի տեսքն է փոխվում: Կոմունիզմի կառուցումներով մի շարք փոփոխություններ կմտնեն ատմոսֆերայի, հիդրոսֆերայի մեջ, կփոխվի և կմեղմանա կլիման: Օրինակ՝ Կարա-Կումի անապատի վերափոխումը (որը կազմում է Թուրքմենստանի ինը տասներորդ մասը, մեկ և կես անգամ մեծ է Մեծ Բրիտանիայից), հավասար է մի ամբողջ երկրի վերստեղծման: Կասպից ծովի մոտ կծփա մի այլ ծով՝ ջամբյակի ծովը, երկու հարյուր տեսակ մերձ-



արևադարձային կուլտուրաներ կաճեն Կարա-Կումի անապատում:

Կոմունիզմի մեծ կառուցումները՝ Կույբիշևյան, Ստալինգրադյան, Կախովկայի հիդրոէլեկտրակայանները, Գլխավոր-Թուրքմենական, Հյուսիս-Ղրիմյան, Հարավ-Ուկրաինական ջրանցքները կառուցվելու և գործարկվելու են 5—7 տարում: Պատմության մեջ վիթխարի շինարարությունները նման կարճ ժամկետներում ավարտելու դեպքեր չեն եղել:

Պանամայի ջրանցքը, օրինակ, որի երկարությունը 31 կիլոմետր է, կառուցվել է 35 տարում, Նեղոսի վրայի ամբարտակը, Ասուանի մոտ, անգլիացիները կառուցել են 68 տարում, որով տնտեսական ստրկացման մեջ են պահել եգիպտական գյուղացիներին: Իսկ որքան մարդկային զոհեր, համաճարակներ են եղել այդ շինարարություններում, որքան ինժեներական սխալներ, խարդախություններ, զեղծարարություններ: ԱՄՆ-ի Բոուլդեր-Դեմ հիդրոէլեկտրակայանը Կոլորադո գետի վրա, որի հզորությունը համարյա կիսով չափ պակաս է Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանից, 40 տարի կառուցվում է և դեռ չի ավարտվել:

Շինարարությունը կոմունիզմի մեծ կառու-

ցումներում չտեսնված տեմպով է կատարվում։ Այդ բանում մեծ դեր է խաղում սովետական տեխնիկան։

Սովետական տեխնիկայի որակական խոշոր աճի վառ արտահայտությունն են հանդիսանում այն մեքենաներն ու մեխանիզմները, որոնք օգտագործվում են կոմունիզմի մեծ կառուցումներում։

Ի՞նչ մեքենաներ և մեխանիզմներ է տալիս ՍՍՌՄ արդյունաբերությունը կոմունիզմի մեծ կառուցումներին, ի՞նչ է ստեղծել սովետական մարդը։

Կոմունիզմի կառուցումներում աշխատում են սովետական գործարանների թողարկած երեք, հինգ, յոթ, տասը, քսանհինգ տոննանոց ինքնաթափիչ բեռնատար ավտոմեքենաներ։ Թե որքան շատ ավտոներ են աշխատում կոմունիզմի մեծ կառուցումներում, երևում է այն բանից, որ միայն Վոլգա-Դոն ջրանցքի գլխավոր ավտոմագիստրալներում մեկ րոպեում անցնում է 120 բեռնված ավտո։

Մեծ կառուցումներում աշխատում են ինքնաբարձիչ տրակտորներ, տրակտորային սկրեպերներ՝ շերեփով, ավտոմատ բարձիչներ, բուլդոզերներ, բետոնի ավտոմատ գործարաններ, հսկա հողածծիչներ, բազմապիսի էքսկավատորներ, առու փորող մեքենա-



ներ, հզոր կռունկներ՝ մինչև 150 տոննա ծանրության բարձրացնելու համար, ունիվերսալ տրակտորներ, բետոնածծիչներ, շոգեքարշեր, դումպկարներ՝ 50 տոննա բեռ տեղափոխելու համար, գետինը 70 մետր խորությամբ փորող հատուկ մեքենաներ և այլն։

Տրակտորային սկրեպերների օգնությամբ հողը հանվում, տեղափոխվում և 10—20 սանտիմետր հավասար շերտով փռվում ու ամրացվում է։ Այդ սկրեպերների շերեփներն ունեն 5-ից 10 և 15 խորանարդ մետր (ավելի քան մեկ ու կես վագոն) տարողություն։

Մի խումբ ինժեներներ ստեղծել են ունիվերսալ, ավտոմատորեն բարձող մեքենա, որը տեղափոխում, թափում և բարձում է տարբեր նյութեր։ Մեքենան 2,5 տոննա ծանրության բեռը կարող է բարձրացնել մինչև 10 մետր։ Ունի հարմարանք, որի օգնությամբ բեռը տանում է վագոնի ներսը։ Նա բեռնում է նաև շինափայտ։ Ունի շերեփ, որի օգնությամբ կարող է մեկ ու կես խորանարդ մետր հող վերցնել ու տեղափոխել։

Բուլդոզերը տրակտոր է, առջևում ունի մի հսկայական բահի նման հարմարանք։ Նա մեկ ժամում հարթում և ամրացնում է 6—8 հեկտար տարածություն։

Բետոն պատրաստելը մի ժամանակ շատ բանվորական ուժ պահանջող պրոցեսներից մեկն էր։ Այժմ կառուցումներում գործում են աշխարհում ամենակատարելագործված բետոնի ավտոմատ գործարաններ։ Բետոնի գործարաններում աշխատանքի բոլոր պրոցեսները մեքենայացված, ավտոմատացված են, սկսած հումքի (ավազ, խիճ, ցեմենտ, ջուր) մատակարարումից, նրանց կշռումից, որակի ստուգումից, վերջացրած պատրաստի բետոնի մատակարարումով։ Բետոնի հզոր ավտոմատ գործարանում աշխատում է 8 մարդ, նրա օրական արտադրողականությունն է 4 հազար խորանարդ մետր պատրաստի բետոն։ Այժմ Վոլգա-Դոն ջրային ուղում օրական պատրաստվում և լցվում է 6 հազար խորանարդ մետր բետոն, երկաթ-բետոն։

Գետի վրա լողում է հզոր հողածծիչ մեքենան։ Այդ մեքենան, որը հիշեցնում է լողացող նավի, վարում են երեք մարդ։ Հզոր հողածծիչ մեքենան հողի մեջ է խրում իր սարքը և փորում մինչև 18 մետր խորությամբ։ Հատուկ սարքերը փորած հողը ջրի հետ խառնելով դարձնում են խուս, որից հետո հսկա հողածծիչ սարքերը խողովակներով խուսը մղում են մինչև 3—4 կիլոմետր հեռավորու-



թյան վրա։ Հզոր հողածծիչ մեքենայի արտադրողականությունը ժամում կազմում է 1.300 խորանարդ մետր, իսկ տարեկան արտադրողականությունը՝ մոտ 3 միլիոն խորանարդ մետր։

Կոմունիզմի կառուցումներում շատ են հատկապես էքսկավատորները, բազմատեսակ և տարբեր հզորությամբ՝ կես խորանարդ մետր շերեփ ունեցողից մինչև 15 խորանարդ մետր։ Նրանց մեջ աչքի է զարկում քայլող էքսկավատորը՝ սովետական ինժեներական մտքի պտուղը։ Այդ հսկա մեքենան Մոսկվայի Մեծ թատրոնի բարձրությունն ունի, նրա քաշը 1.200 տոննա է և այն տեղափոխելու համար անհրաժեշտ է 120 վագոն։ Նրա մեքենայական բաժինը 200 խորանարդ մետր ծավալ ունի։ Քայլող էքսկավատորը պատրաստվում է «Ուրալմաշ» գործարանում, որը Մաքսիմ Գորկու դիպուկ արտահայտությամբ՝ գործարանների հայրն է։ Քայլող էքսկավատորն ունի 42 էլեկտրամոտոր, որոնք տալիս են այնքան էլեկտրաէներգիա, որքան ծախսում է Ուկրաինայի քաղաքներից՝ Պոլտավան։ Քայլող էքսկավատորի վրա, ամեն մի հերթափոխում աշխատում է 5 մարդ։ Այդ մեքենայական հողափորը ունի 14 խորանարդ մետր տարողության շերեփ,

որի օգնությամբ մի անգամից 20 տոննա հող է վերցնում, այսինքն օրական մոտ 20 հազար խորանարդ մետր, իսկ տարեկան 2,5—3 միլիոն խորանարդ մետր։ Նրա սլաքի երկարությունը 65 մետր է։ Քայլող հսկան մի ուղղությամբ գնալով և հակառակ ուղղությամբ վերադառնալով կարող է փորել մի այնպիսի ջրանցք, որի լայնությունը կլինի 120 մետր, իսկ խորությունը 20—25 մետր։ Քայլող էքսկավատորը փոխարինում է 10 հազար հողափորի։

Քայլող էքսկավատորի արտադրությունը սկսվել է 1942 թվականի նոյեմբերի 23-ին, երբ Հարավ-Արևմտյան և Դոնի ռազմաճակատի զորքերը օղակեցին գերմանական բանակը Ստալինգրադի տակ։ Երբ սովետական տանկերը զավթիչների զորքերին քշում էին արևմուտք, խաղաղ շինարարության մեքենան կոփվում էր Ուրալում։

Սոցիալիստական արդյունաբերությունը կառուցողներին առատորեն մատակարարում է գերազանց մեքենաներ և մեխանիզմներ, որոնք սովետական մարդկանց ղեկավարությամբ հրաշքներ են կատարում։ Վոլգա—Դոն ջրային ուղում այժմ օրական հանվում և տեղափոխվում է 240 հազար խորանարդ մետր հող։



Աշխատատար պրոցեսների մեքենայացումը կոմունիզմի մեծ կառուցումներում չտեսնըված չափերի է հասնում։ Այստեղ հողային աշխատանքները հարյուր տոկոսով մեքենայացված են, իսկ շինարարական աշխատանքները ընդհանրապես մեքենայացված են 90 տոկոսով։

Կոմունիզմի մեծ կառուցումներում մկանային լարվածությունը իր տեղը զիջում է աշխատավորների մտավոր չափավոր գործունեությանը։ Որոշողը ոչ թե ֆիզիկական ուժն է, այլ ինժեների միտքը, գիտնականի ֆորմուլան, մեխանիզատորի փորձը։ Սոցիալիստական այդ խոր փոփոխությունը, որը տեղի է ունենում մեր երկրում, կոմունիզմի կառուցումներում հատկապես աչքի է ընկնում։ Մեծ կառուցումների էպոխան, դա նոր մարդկանց նոր մեքենաների էպոխան է։

Վոլգա—Դոն ջրային ուղու կառուցումներում մարդիկ քիչ են երևում։ Երևում են բազմապիսի և բազմաթիվ մեքենաներ, որոնք աշխատում են սովետական մարդու ղեկավարությամբ։

Ժուռնալիստներից մեկը Վոլգա—Դոն ջրանցքի շինարարության վայրը այցելելիս հետաքրքրվեց շինարարության հաստիքներով։ Նա զարմացավ բազմազան և բազմա-

պիսի հատիքների ցուցակով, բայց ավելի զարմացավ, երբ իմացավ, որ այդ վիթխարի շինարարությունում, ուր տասնյակ միլիոնավոր խորանարդ մետր հողային աշխատանք է կատարվում, չի նախատեսված ամենակարևոր հատիքը՝ հողափորը։ Նա հարցրեց շինարարության պետին, իսկ շինարարության պետը պատասխանեց, որ կյանքը ինքը լրացրեց այդ հատիքը, սայլապանին փոխարինելու եկավ ավտոմեքենավարը, հողափորին՝ էքսկավատոր վարողը...։

Վիթխարի են կոմունիզմի կառուցումները։ Սովետական մարդը, որը հատուկ սեր ունի դեպի մեքենան, դեպի տեխնիկան, մեծամեծ գործեր է կատարում։ Նա ստեղծում է և՛ էներգետիկա, և՛ տրանսպորտ, և՛ ոռոգում։ Սովետական մարդը ուղղում է աշխարհագրական անարդարությունը՝ փոխում է գետերի հունը, փոխում է բնությունը։

Հ. ՓԱՐԻԿՅԱՆ

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԻՆՉՊԵՍ Է ԱՇԽԱՏՈՒՄ ԱԳԻՏԱՏՈՐ ՀԵՆՐԻԿ ՈՍԿԱՆՅԱՆԸ

Երևանի մահուդի ֆաբրիկայում գովասանքով են խոսում ենթավարպետ Հենրիկ Ոսկանյանի մասին, որպես գերազանց որակի բրիգադի բրիգադիրի, որի ղեկավարած կոմպլեկտը սիստեմատիկաբար գերակատարում է իր պլանները։

Բայց Ոսկանյանը ֆաբրիկայում հայտնի է ոչ միայն որպես ստախանովական, առաջավոր բրիգադիրի, այլև որպես հասարակական ակտիվ աշխատողի, որպես լավագույն ագիտատորի։ Նրա ագիտացիոն զրույցները բովանդակալից են, անցնում են հետաքրքիր ու աշխույժ։ Դրա պատճառն այն է, որ ագիտատոր Հ. Ոսկանյանը, մինչև յուրաքանչյուր զրույց անցկացնելը, իր առաջ դնում է կոնկրետ խնդիր, այսինքն՝ ինչ նպատակի պետք է ծառայի այդ զրույցը, ինչ արդյունքների պետք է հասցնի այն։ Իր այդ նպատակին հասնելու համար նա զրույցին նախապատրաստ-

վում է շատ խնամքով, ընտրում է տվյալ զրույցն անցկացնելու այն ձևը, որն ավելի մեծ արդյունքի կհասցնի։ Վերջապես ունկնդիրներն իրենց ագիտատորին մեծ հետաքրքրությամբ են լսում նաև այն պատճառով, որ նա, ինչի մասին էլ որ խոսելիս լինի, այն միշտ կկապի հենց իրենց ֆաբրիկայի ու կոմպլեկտի, առանձին բանվորների աշխատանքի հետ, յուրաքանչյուր անգամ մի նոր, ուսանելի բան կասի, որը պետք է կատարեն իրենք՝ ունկնդիրները։

Թերթում ենք Ոսկանյանի գրանցումների տետրը, որտեղ գրի են առնված վերջին երկու ամսվա ընթացքում նրա անցկացրած զրույցների թեմաները։ Այդ թեմաները բազմազան են։ Ագիտատորն իր ունկնդիրներին սիստեմատիկաբար և ժամանակին հաղորդում է ինչպես միջազգային կյանքում տեղի ունեցող իրադարձությունները, այնպես էլ սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքը, արտադրության առաջավորների նորանոր նախաձեռնությունները, պարտիայի ու կառավարության որոշումները։ Ահա վերջին ամսվա ընթացքում նրա անցկացրած զրույցների թեմաները. «Բնության վերափոխման ստալինյան պլանի իրագործումը», «Կոմու-



նիզմի մեծ կառուցումների շինարարությունների ընթացքը», «Ինժեներ Կովալյովի մեթոդի կիրառումը մեր ֆաբրիկայում», «Կեսոնի բանակցությունների ընթացքը», «Խաղաղության համար մղվող պայքարը բոլոր ժողովուրդների գործն է», «Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ ստորագրությունների հավաքումը և նրա նշանակությունը» և այլն։

Ոսկանյանը սիստեմատիկաբար հետաքրքիր զրույցներ է անցկացնում նաև ֆաբրիկայի, ցեխի և հերթափոխի կոլեկտիվի առջև դրված խնդիրների մասին։ Այսպես օրինակ, նա մի շարք զրույցներ է անցկացրել հետևյալ թեմաների շուրջը. «Գերազանց որակի արտադրանք թողարկելու գործում սոցիալիստական մեր պարտավորությունների կատարման ընթացքը», «Յուրաքանչյուր օպերացիայի ժամանակ ինքնարժեքն իջեցնելու համար ծավալված սոցիալիստական մրցության մեջ մեր խնդիրները» և այլն։

Արտադրանքի որակի բարձրացմանը նվիրված զրույցը նա անցկացրեց ցեխի վարպետ Խ. Բերբերյանի հետ միասին։ Զրույցը կազմակերպվեց հետևյալ կերպ. ագիտատորը խոսեց բարձրորակ արտա-

դրանք թողարկելու ժողովրդա-տնտեսական նշանակության մասին, ունկնդիրներին հիշեցնելով, թե ֆաբրիկայի, ցեխի ու հերթափոխի կոլեկտիվներն առանձին-առանձին ինչ պարտավորություններ են ստանձնել այդ ուղղությամբ և ինչպես են կատարում դրանք։ Ապա հանդես եկավ ցեխի վարպետը։ Նա ցուցադրելով արտադրանքի տարբեր նմուշներ, իր ելույթում հանգամանորեն վերլուծեց, թե ինչպես բանվորուհիներ Ա. Բարսեղյանը, Ե. Հարությունյանը, Թ. Բարսեղյանը և ուրիշներ թողարկում են բարձրորակ արտադրանք, իսկ նրանց կողքին կան բանվորուհիներ, որոնք երբեմն ցածրորակ արտադրանք են տալիս։ Վարպետը գործնականորեն ցույց տվեց, թե ինչից է առաջանում ցածրորակ արտադրանքը։

Ֆաբրիկայի առջև դրված խնդիրների հետ կապված այդ զրույցները իրենց դրական արդյունքն են տալիս։ Զրույցներից հետո, ագիտատորի և վարպետի՝ դազգահի մոտ կազմակերպված օգնության շնորհիվ, առանձին բանվորուհիներ, որոնք հետ էին մնում, այժմ արդեն հասել են առաջավորներին։ Այսպես, օրինակ, Օ. Քոչարյանը, Հ. Ոշտունին, Կ. Ալեքսանյանը և ուրիշներ, որոնք մեկ—երկու ամիս առաջ իրենց ընկեր-



ների համեմատությամբ ցածր ցուցանիշներ ունեին, այժմ արդեն արտադրության առաջավորներ են։

Պետք է նշել, որ հետ մնացող բանվորներին օգնելու գործում չափազանց կարևոր նշանակություն ունի ագիտատորի անձնական օրինակը։ Ագիտատոր Հ. Ոսկանյանը լավ աշխատանքի հիանալի օրինակ է տալիս։ Նրա ղեկավարած բրիգադը ՍՍՌՄ Թեթև արդյունաբերության մինիստրության կողմից արժանացել է «գերազանց որակի բրիգադ»-ի բարձր կոչման։ Ագիտատոր Ոսկանյանը, ագիտացիոն աշխատանքին զուգընթաց, սիստեմատիկաբար իր և իր բրիգադի ուսանելի փորձը հաղորդում է հերթափոխի և ամբողջ ցեխի աշխատողներին։

Օրերս Ոսկանյանը հետաքրքիր զրույց անցկացրեց յուրաքանչյուր օպերացիայի ժամանակ արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու հարցի շուրջը։ Զրույցին մասնակցում էին հերթափոխի բոլոր աշխատողները, ինչպես նաև շատ բանվոր-բանվորուհիներ մյուս օժանդակ ցեխերից։

— Արտադրանքի ինքնարժեքի իջեցումն,— ասում է ագիտատորը,— ժողովրդա-տնտեսական հսկայական նշանակություն ունի։ Դա հնարավորություն է տալիս հե-

[illegible] իջեցնել ապրանքների գները, հետևապես, նպաստում է աշխատավորության կենսամակարդակի հետագա բարձրացմանը։ Ահա թե ինչու յուրաքանչյուր բանվոր, յուրաքանչյուր վարպետ, սովետական յուրաքանչյուր քաղաքացի կենսականորեն շահագրգռված է արտադրանքի ինքնարժեքի իջեցման մեջ, ահա թե ինչու, յուրաքանչյուր օպերացիայի ժամանակ արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար մրցությունը լայն ծավալ է ստանում մեր Միության բոլոր ձեռնարկություններում։

Այպա ագիտատորն ունկնդիրներին հաղորդում է, թե ֆաբրիկայում որ բանվորը, որ վարպետն ինչ հաջողության է հասել այդ ուղղությամբ։ Նա թվում է առաջավոր ջուլհակներ ու մանածագործներ Ն. Մնացականյանի, Թ. Համբարձումյանի, Ս. Մանուկյանի, Վ. Ավետիսյանի և ուրիշների անունները, պատմում է այն մասին, թե նրանք ինչպես, ինչ ճանապարհով են հասել հումքի զգալի խնայողության, ինքնարժեքի իջեցման։

— Կիրառե՛լ այդ առաջավորների աշխատանքի մեթոդը,— ահա այն եզրակացությունը, որ անում է զրույցին մասնակցող



յուրաքանչյուր բանվոր, յուրաքանչյուր բանվորուհի։

Ագիտացիան արվեստ է։ Այդ լավ է հասկանում ագիտատոր Հ. Ոսկանյանը և ջանք չի խնայում այդ արվեստին լավ տիրապետելու, իրեն հանձնարարված պատվավոր գործը հաջողությամբ կատարելու համար։

— Ագիտացիան հաջող կազմակերպելու գործում կարևոր նշանակություն ունի նաև զրույցն անցկացնելու մեթոդը,— ասում է նա։ Հաճախ շատ ագիտատորներ բավարարվում են թերթերից առանձին ինֆորմացիաներ ընթերցելով։ Դա այնքան էլ արդյունք չի տալիս։ Իսկ ես այդպես չեմ վարվում։ Ես ունկնդիրների հետ անց եմ կացնում կենդանի, աշխույժ զրույց, որին մասնակցում են հենց իրենք, զրույցի թեմայի շուրջը արտահայտելով իրենց կարծիքը։

Վերջերս ֆաբրիկայի ագիտկոլեկտիվը սեմինար պարապմունքի ընթացքում քննարկելու էր այն հարցը, թե ագիտատորը ինչպես պետք է նախապատրաստվի զրույցին։ Որոշվեց այդ մասին սեմինարում լսել երկու լավագույն ագիտատորների։ Դրանցից մեկը Հ. Ոսկանյանն էր, մյուսը՝ Հ. Շախմուրադյանը։

Ագիտկոլեկտիվն ուշադրությամբ լսեց նր-

րանց գեկուցումները, ագիտատորները մանրամասն պատմեցին իրենց աշխատանքի, զրույցներին նախապատրաստվելու եղանակի մասին։

Ագիտատոր Հ. Ոսկանյանը սիստեմատիկաբար աշխատում է իր վրա, հետզհետե հարստացնում իր գիտելիքները։ Յուրաքանչյուր զրույցի նախապատրաստվելիս նա կարդում է անհրաժեշտ գրականությունը՝ ինչպես թերթեր ու ժուռնալներ, այնպես և գիտական և գեղարվեստական գրքեր։

Ֆաբրիկայի ագիտատորներին անհրաժեշտ օգնություն են ցույց տալիս, ինչպես պարտիական կազմակերպության բյուրոն, այնպես և ՀԿ(բ)Պ Ստալինյան ռայկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի աշխատողները։ Ֆաբրիկայում ագիտատորների համար ամսական 3—4 անգամ սեմինար պարապմունքներ են կազմակերպվում, ուր քննության են դրվում ագիտատորների առաջիկա զրույցների թեմաները, մշակվում այդ զրույցներն անցկացնելու համապատասխան ձևերը։

Մ. ՂԱԶԱՐՅԱՆ

---



# ՍՏԱԼԻՆԻ ԱՆՎԱՆ ԱՎՏՈՄՈԲԻԼԱՅԻՆ ԳՈՐԾԱՐԱՆԸ (ԶԻՍ)

Մոսկվայի Ստալինի անվան ավտոմոբիլային գործարանը (ԶԻՍ) արտադրում է բեռնատար ու մարդատար ավտոմեքենաներ և ավտոբուսներ։ Նա սոցիալիստական ինդուստրիայի առաջնեկն է։

1915 թվականի գարնանը, Մոսկվայի Տյուֆելևայա անտառակում միլիոնատեր եղբայրներ Ռյաբուշինսկիները կազմակերպեցին «Մոսկվայի «ԱՄՈ» ավտոմոբիլային գործարանի փայատիրական ընկերություն»։ Գործարանը լրիվ չկառուցած՝ Ռյաբուշինսկիները այն վերասարքավորեցին՝ դարձրին հավաքող արհեստանոց, որտեղ ներմուծվող մասերից հավաքվում էր տարեկան մոտ 100 մեքենա։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից մի փոքր անց, 1918 թվականի հունիսի 28-ին, ժողկոմսովետը ազգայնացրեց «ԱՄՈ» գործարանը։

Նույն օրը գործարանի թափքի ցեխում տեղի ունեցած Սեմյոնովի ենթաշրջանի մի-

տինգում, որին մասնակցում էր ավելի քան 2 հազար մարդ, հանդես եկավ Վ. Ի. Լենինը և Մոսկվայի պրոլետարիատին կոչ արեց՝ համերաշխ, կազմակերպված պայքարի ելնել ընդդեմ կոնտրռևոլյուցիայի, սովի ու փլուզման։

Սկզբնական շրջանում «ԱՄՈ» գործարանը հին մեքենաներ և տրակտորներ էր վերանորոգում։ 1924 թվականին գործարանն սկսեց ԱՄՈ—Ֆ—15 ավտոմեքենաներ թողարկել՝ 1,5 տոննա բեռնատարողությամբ, 36 ձիու ուժանոց շարժիչով։ Հոկտեմբերի յոթերորդ տարեդարձի օրը, 1924 թվականի նոյեմբերի 7-ին, տոնականորեն զարդարված Կարմիր հրապարակով անցան տասը մեքենաներ՝ նշանավորելով հայրենական ավտոմոբիլաշինության ծնունդը։

1929—31 թվականներին Ի. Վ. Ստալինի ցուցումով իրագործվեց գործարանի առաջին վերակառուցումը։ «ԱՄՈ» արհեստանոցի փոխարեն այնտեղ կառուցվեց առաջնակարգ, տեխնիկայի վերջին խոսքով հագեցված ավտոգործարանը։ 1932 թվականին գործարանի կարողությունը հասցվեց 25 հազար «ԱՄՈ—3» երեք տոննանոց բեռնատար ավտոմոբիլի թողարկման։ Ոյաբուշինսկիների արհեստանոցից միայն շենքն է մնացել, որն օգտագործվում է որպես գործարանի գրասենյակ։ Գործարանը շահագործման հանձնելու օրը, 1931 թվականի հոկտեմբերի 1-ին, Ի. Վ. Ստալինը ողջույնի հեռագիր ուղարկեց գործարանի կոլեկտիվին, որի մեջ գրել է.

«ՀամԿ(բ)Պ Կենտկոմը մեծ գոհունակությամբ է նշում «ԱՄՈ» գործարանի բանվորների ու վարչա-տեխնիկական անձնակազմի հաղթանակը։ Այնտեղ, որտեղ ռուս կապիտալիստները կարող էին կառուցել ավտոմոբիլային արհեստանոցներ՝ հետամնաց տեխնիկայով, աշխատանքի ցածր արտադրողականությամբ, շահագործման բարբարոսական եղանակներով, ստեղծված է հզոր գիգանտ՝ 25.000 բեռնատար մեքենայի արտադրողականությամբ, ժամանակակից տեխնիկայի բոլոր նվաճումների կիրառմամբ։ Ձեր հաղթանակը մեր երկրի բոլոր աշխատավորների հաղթանակն է։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմն անհողդողդ համոզմունք է հայտնում, որ այդ առաջին մեծ հաղթանակին կհետևեն ձեր մյուս հաղթանակները՝ գործարանի նոր տեխնիկայի յուրացումը, արտադրական ծրագրի անշեղ կատարումը, արտադրության ծախսերի իջեցումը և արտադրանքի բարձր որակը։

Բոլշևիկյան ջերմ ողջույն ՍՍՌՄ-ում առաջին ավտոգիգանտի՝ «ԱՄՕ» գործարանի բոլոր կառուցողներին»։

Իր զարգացման ամբողջ ընթացքում ավտոգործարանը շարունակ զգացել է ընկեր Ստալինի հսկայական ուշադրությունն ու հոգատարությունը։ Նոր ավտոմեքենայի գրեթե ամեն մի տիպ անձամբ տեսնում է ընկեր Ստալինը, տալով իր անհրաժեշտ ցուցումները։

Ավտոգործարանի բազմահազար աշխատողների կոլեկտիվի խնդրանոք՝ գործարանին շնորհվեց Ի. Վ. Ստալինի անունը։

1934—37 թվականներին իրագործվեց գործարանի հետագա վերակառուցումը, որն ապահովեց ԶԻՍ—5 մեքենաների արտադրության ավելացումը՝ տարեկան մինչև 90 հազար։ 1936 թվականին գործարանն սկսեց ԶԻՍ—101 մարդատար ավտոմոբիլների արտադրությունը։

Հայրենական Մեծ պատերազմի սկզբներին գործարանը թողարկում էր մինչև 20 տիպի զանազան մեքենաներ։ 1941 թվականին գործարանի սարքավորումը Մոսկվայից տեղափոխվեց-վերաբազավորվեց ՍՍՌՄ-ի արևելյան շրջանները և միևնույն ժամանակ գործարանի Մոսկվայի ցեխերում կազմակերպվեց ռազմական արտադրանքի մասսայական թողարկումը։ 1942 թվականի հունիսի 3-ին, պաշտպանական արտադրանք թողարկելու գծով կառավարության առաջադրանքներն օրինակելիորեն կատարելու համար, գործարանը պարգևատրվեց Լենինի շքանշանով։ 1943 թվականին Ստալինի անվան գործարանում լրիվին վերականգնեցվեց ավտոների արտադրության ցիկլը։ 1944 թվականի հոկտեմբերի 28-ին, ավտոմոբիլներ թողարկելու գծով կառավարության առաջադրանքները և ռազմաճակատի պատվերները հաջողությամբ կատարելու համար, ավտոգործարանը պարգևատրվեց Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով, իսկ գործարանի աշխատողների մի մեծ խումբ՝ շքանշաններով ու մեդալներով։

1946 թվականին սկսվեց ԶԻՍ—110 մարդատար ավտոմեքենաների թողարկումը։ ԶԻՍ—110 ավտոմեքենան յոթ տեղանոց, շքեղ հարմարություններ ունեցող ավտոմեքենա է՝ 140 ձիու ուժ ունեցող 8—գլանանոց շարժիչով, լիմուզինի թափքով, ռադիոընդունիչով, ջեռուցմամբ, ապակիների հիդրավլիկ բարձրացմամբ, հարմարանքներով և ժամանակակից նորագույն գործիքներով։ Առավելագույն արագությունը խճուղային ճանա-

պարհներում հավասար է ժամում 140 կիլոմետրի։ 1947 թվականին երկիրն ստացավ նոր մեքենա՝ բազմատեղանոց, վագոնային տիպի ԶԻՍ—154 ավտոբուսը։ 1948 թվականին, ավտոմոբիլաշինության պատմության մեջ առաջին անգամ՝ գործարանն անցավ ԶԻՍ բեռնատար ավտոմեքենայի նոր մոդելի մասսայական արտադրությանը՝ առանց ընթացիկ արտադրությունը կանգնեցնելու։ Այդ նոր մեքենայի բեռնատարողությունն է՝ 4 տոննա, մոտորի կարողությունը՝ 90 ձիուժ։ ԶԻՍ—150 բեռնատար ավտոմեքենայի և ԶԻՍ—151 ամենագնաց մեքենայի արտադրությամբ՝ գործարանն ավարտեց ավտոմեքենաների այն նոր տիպերի յուրացումը, որոնք նախատեսված էին 1946—1950 թվականների պլանով։ 1948 թվականի վերջերին գործարանը գերազանցեց ավտոմեքենաների նախապատերազմյան օրական միջին թողարկումը՝ 40 տոկոսով, իսկ բեռնատարողության գծով՝ 86 տոկոսով։

Ավտոգործարանը կադրերի դարբնոց է. այստեղ աճել են ավտոմոբիլաշինության հարյուրավոր տաղանդավոր վարպետներ։ Դրանցից 27-ը Ստալինյան մրցանակների լաուրեատներ են։ Գործարանի ավելի քան 1000 բանվորներ 1949 թվականին՝ հնգամ-



յակի 4-րդ տարում, հինգ տարվա նորմա էին կատարել։ Թիթեղագործ Ա. Ա. Գավրիլինը երեք հնգամյակի նորմա էր կատարել, մամլող Ե. Դ. Իզրյադնովան՝ երկու հնգամյակի նորմա։ Ամբողջ երկրին հայտնի է դարբին Մ. Դ. Ուշկալովի անունը, որը 1949 թվականի սեպտեմբերի 28-ին իր հերթափոխության ընթացքում պատրաստեց 350 ծնկաձև լիսեռ՝ նորմայով նախատեսված 120-ի դիմաց։ Գործարանն առհավետ պահպանելու համար ստացել է ՍՍՌ Միության Պաշտպանության Պետական Կոմիտեի դրոշը, Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ 72 անգամ նվաճել է ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի դրոշը։

Գործարանի աշխատողների նյութական և կուլտ-կենցաղային պայմաններն անընդհատ բարելավվում են։ Նրանց համար կառուցվել են տասնյակ բարեկարգ տներ։ Ռիգայի ծովափին բացվել է սանատորիա, Մոսկվայի մոտ՝ «Վասկինո» հանգստյան տունը։ Ստեղծվել են գիշերային սանատորիա, պոլիկլինիկա, երեխաների անտառային դպրոց, նախադպրոցականի սանատորիա, մանկամսուր։ Գործարանն ամեն տարի մեծ գումարներ է ծախսում՝ բանվորների աշխատանքի պայմաններն ավելի բարելա-

վելու, կուրորտների ուղեգրեր ձեռք բերելու համար։ 1937 թվականի դեկտեմբերի 5-ին, Ստալինյան Կոնստիտուցիայի օրը, գործարանի աշխատողները բաց արին իրենց Կուլտուրայի պալատը, որի շինարարության վրա պետությունը ծախսել է 12 միլիոն ռուբլի։ Ավելի քան 100 սենյակից ու դահլիճից բաղկացած Կուլտուրայի պալատն ունի գեղարվեստական ինքնագործունեության 43 կոլեկտիվ, որոնց մեջ ընդգրկված է մոտ 1900 մարդ։ Կուլտուրայի պալատն ունի՝ լեկտորիում, ստախանովյան կաբինետ, երգեցողության, դրամատիկ, խորեոգրաֆիկ, ակրոբատիկ խմբակներ, գեղարվեստական ասմունքի խմբակ, կերպարվեստի ստուդիա, ժողովրդական գործիքների, բայանիստների անսամբլներ, փողային նվագախումբ։ Սովետական արվեստի խոշոր գործիչները առանձին խմբակների շեֆերն են։ Պալատի գրադարանը 1949 թվականին ուներ ավելի քան 100 հազար անուն գիրք, որոնցով սպասարկում էր ամսական 40 հազարից ավելի ընթերցողների։ Բացի դրանից, գործարանի ցեխերում կար գրադարանի 16 ֆիլիալ։

Ավտոգործարանը հսկայական միջոցներ է ծախսում տեխուսուցման նպատակներով։ Տեխնիկական գրադարանն ունի 100 հազար



գիրք։ Հեռակա ինստիտուտում, երեկոյան դպրոցում, զանազան դասընթացներում սովորում է գործարանի մոտ 7 հազար բանվոր։ Միայն 1948 թվականին ղեկավար աշխատանքի են առաջ քաշվել 220 մարդ։ Գործարանի «Տորպեդո» սպորտ ընկերությունն իր շարքերում ունի ավելի քան 4 հազար սպորտսմեն։ «Տորպեդո» ֆուտբոլային թիմը՝ երկրի լավագույն թիմերից մեկն է։ Վատերպոլիստների թիմը՝ ՍՍՌՄ լավագույն թիմերից է։ Տուրիստական արշավներին տարեկան մասնակցում են ավելի քան 3 հազար տուրիստ։

1949 թվականի նոյեմբերին գործարանը՝ հայրենիքին մատուցած աչքի ընկնող ծառայությունների համար, 25-ամյակի կապակցությամբ, պարգևատրվեց Լենինի շքանշանով։ Շքանշաններով և մեդալներով պարգևատրվեց գործարանի աշխատողների մի մեծ խումբ։ Ավտոգործարանի կոլեկտիվին ուղարկած իր ողջույնի մեջ Ի. Վ. Ստալինը գրել էր. «Սովետական ավտոմոբիլաշինության առաջնեկը՝ Մոսկվայի ԶԻՍ-ը մեծ դեր է խաղացել մեր հայրենական ավտոմոբիլային արդյունաբերության զարգացման և ավտոշինարարների բոլշևիկյան կադրեր դաստիարակելու գործում։

Հետպատերազմյան տարիներին գործարանի կոլեկտիվը ձեռք բերեց լուրջ հաջողություններ և առաջավոր տեխնիկայի արմատավորման հիման վրա ավարտեց հնգամյա պլանով նախատեսված՝ ավտոմոբիլների նոր տիպերի մասսայական արտադրության յուրացումը։

Ցանկանում եմ Ձեզ, ընկերներ, նորանոր հաջողություններ՝ տեխնիկայի բնագավառում և հայրենական ավտոշինության հետագա զարգացման գործում»։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ՄՈՆՈՊՈԼԻԱՆԵՐԻ ՀՍԿԱՅԱԿԱՆ ՇԱՀՈՒՅԹՆԵՐԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԱՂՔԱՏՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՊԻՏԱԼԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ

✪ Ամերիկյան միլիարդատերերը և միլիոնատերերը, ինչպես և Անգլիայի, Ֆրանսիայի և այլ երկրների կապիտալիստները, ծարավի են նոր պատերազմի։ Պատերազմը նրանց պետք է գերշահույթներ ստանալու, ուրիշ երկրներ թալանելու համար։ Իմպերիալիստների կողմից լայն թափով ծավալված սպառազինության մրցավազքը մոնոպոլիաներին բերում է հսկայական շահույթներ, իսկ աշխատավորների համար՝ աղքատության աճ։

✪ «Պատերազմը չի՛ թողնի, որ մեր բիզնեսը խորտակվի»,— այսպիսի բացագանչությամբ դիմավորեց Կորեայում պատերազմ սկսելու վերաբերյալ լուրը ամերիկյան միլիարդատերերից մեկը՝ Հենրի Ֆորդը։

Այժմ «Ֆորդ» ընկերությունն ունի մոտ մեկ միլիարդ դոլլարի ռազմական պատվեր։

1951 թվականի առաջին կեսին ԱՄՆ-ի ամբողջ արդյունաբերական արտադրանքում ռազմական արտադրանքի բաժինը ավելացավ համարյա թե երկու անգամ՝ Կորեայում ամերիկյան ինտերվենցիային նախորդող ժամանակաշրջանի հետ համեմատած։

✪ Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիայի տվյալներով, մոնոպոլիաների շահույթները ԱՄՆ-ում 1950 թվականին հասան 48 միլիարդ դոլլարի, այսինքն մոտ 15 անգամ ավելի, քան նախապատերազմյան 1938 թվականին։ Այս տարի ամերիկյան մոնոպոլիաների շահույթները հասան նոր ռեկորդի՝ 50 միլիարդ դոլլարի։

✪ Անգլիական կապիտալիստների շահույթները 1949 թվականին 3 անգամ ավելի էին նախապատերազմյանից։ 1950 թ. Անգլիայի մոնոպոլիաների շահույթները աճեցին ավելի մեծ չափերով և, ոչ լրիվ հաշվումներով, կազմեցին 2 միլիարդ 147 միլիոն ֆունտ ստերլինգ։ 1951 թվականի 6 ամիսների ընթացքում 2.104 անգլիական ընկերություններ ստացան 1 միլիարդ 103 միլիոն ֆունտ ստերլինգ շահույթ, այսինքն



24 տոկոսով ավելի, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում։

✪ Կապիտալիստները վախենում են խաղաղությունից, նրանք սարսափ են զգում խաղաղությունից։ Երբ սկսվեցին Կորեայում պատերազմական գործողությունները դադարեցնելու բանակցությունները, ԱՄՆ-ի բորսաներում ակցիաների գները շեշտակի կերպով ընկան։

«Միջազգային հարաբերությունների բնագավառում մթնոլորտի լարվածության ամեն մի, թեկուզ չնչին, թուլացման հնարավորությունը վտանգ է հանդիսանում ԱՄՆ-ի տնտեսության համար»,— հայտարարեց ամերիկյան «Պաշտպանության համար մոբիլիզացիայի վարչության» ղեկավար Վիլսոնը։ ԱՄՆ-ի կառավարության մեջ մորգանների տան ներկայացուցիչ Վիլսոնի այս խոսքերը պարզ կերպով վկայում են այն մասին, որ ամերիկյան մոնոպոլիաներին ատելի է նույնիսկ միջազգային հարաբերությունների բարելավման միտքը։

✪ Ռազմական հսկայական ծախսերի ամբողջ ծանրությունը կապիտալիստական կառավարությունները գցում են աշխատավորների ուսերին։ Կապիտալի երկրներում անընդհատ ավելանում են հարկերը, ուժե-

ղանում է ժողովրդական մասսաների կողոպուտը։ Արդեն 1950 թվականին կապիտալիստական երկրներում հարկերը 5—10 անգամ բարձր էին նախապատերազմյան մակարդակից։ Դրանից հետո, նրանք նորից զգալի չափով բարձրացան։ Եթե մեկ տարի առաջ հարկերը կլանում էին ամերիկացիների միջին աշխատավարձի մոտ մեկ երրորդ մասը, ապա այժմ նրանք կկլանեն մոտ կեսը։ Անգլիայում անհատական եկամտահարկը մեկ տարվա ընթացքում՝ 1950 թվականի հունիսի 1-ից, բարձրացավ 30 տոկոսով։ Դանիայում ուղղակի և անուղղակի հարկերը, 1949 թվականի նկատմամբ, բարձրացան համարյա թե երկու անգամ։ Ֆրանսիայի աշխատավորներն այժմ երեք անգամ ավելի հարկ են վճարում, քան 1947 թվականին։

✪ Սպառազինությունների մրցավազքն իր հետ բերում է քաղաքացիական արտադրության կրճատում, խաղաղ շինարարության դադարեցում, լայն սպառման ապրանքների գների բարձրացում։

Հետպատերազմյան բոլոր տարիների ընթացքում ԱՄՆ-ում անընդհատ աճում է թանկությունը։ Մամուլում հրապարակված աշխատանքի մինիստրության աշխատանքա-



յին վիճակագրության բյուրոյի՝ ակնհայտորեն իջեցված տվյալների համաձայն վերջին տարիների ընթացքում սննդամթերքների և առաջին անհրաժեշտության առարկաների գները աճեցին ավելի քան երկու անգամ։

✪ Ամերիկյան պրոֆմիութենական «Մարչ օֆ լեյբոր» ժուռնալը վերջերս հրապարակեց մի հոդված՝ «Պատմվածք Միացյալ Նահանգներում 1951 թվականի հավասարության մասին» վերնագրով։

«Ուոլստրիտյան և վաշինգտոնյան խոշոր գործատերի կինը,— գրում է ժուռնալը,— վերջերս իր շան համար պատվիրեց վզնոց, որը զարդարված էր 10 հազար դոլլար արժողություն ունեցող ադամանդներով»։ Իսկ ինչ վերաբերվում է ամերիկյան բանվորների կանանց, ապա իրենց ամուսինների աղքատիկ աշխատավարձով նրանք հնարավորություն չունեն նույնիսկ ընտանիք կերակրելու։ Այսպիսին է իրականում ամերիկյան հավասարությունը։

Պրոֆմիությունների ղեկավարներին ուղղված իրենց նամակներում ամերիկյան բանվորները նկարագրում են իրենց ընտանիքների հուսահատ վիճակը և պահանջում են աշխատավարձի բարձրացում։ Այդպիսի

նամակներից մեկում Չիկագոյի մսի կոնսերվաների գործարանի բանվոր Մորտոն Գիլմորը գրում է.

«Ստեղծված դրությունը մեր գործարանի բանվորների մեջ մեծ զայրույթ է առաջացնում։ Աշխատում ես գոմեշի պես, սակայն գնալով ավելի ու ավելի ես թաղվում պարտքերի մեջ։ Նրանք, ովքեր երեխաներ ունեն, հնարավորություն չունեն նրանց կերակրելու...»։

✪ Անգլիան նույնիսկ պատերազմի ժամանակ չունեցավ գների այնպիսի շեշտակի վերելք, ինչպիսին տեղի է ունենում այս տարի։ Վերջին կես տարվա ընթացքում համարյա ամեն շաբաթ հայտարարվում է ապրանքների գների բարձրացում։ Միայն 1951 թվականի մարտ ամսից հետո բարձրացան 300 տեսակ սննդամթերքների գները։ Ապրիլ ամսին առևտրի մինիստրությունը հայտարարեց հագուստեղենի, տրիկոտաժեղենի և գործվածքեղենի գների բարձրացման «լայն ծրագիր»։ Այդ ծրագրին համապատասխան հուլիսի սկզբին գները բարձրացան. կոշկեղենինը՝ 30—35 տոկոսով, սպիտակեղենինը՝ 15—20 տոկոսով և այլն։ Տարվա ընթացքում երկու անգամ տեղի ունեցավ ածխի գնի բարձրացում։ Տր-



անսպորտի բոլոր տեսակներից օգտվելու և կոմունալ սպասարկման բոլոր կարգի վճարումները ավելացան 25—30 տոկոսով։

✪ «Սպառազինությունների մրցավազքով կլանված այսօրվա Անգլիան,— գրում է անգլիական պրոգրեսիվ ժուռնալիստ Ռալֆ Պարկերը,— հանդիսանում է Եվրոպայի ամենասարսափելի հետնաբակերի երկիրը»։

✪ Ֆրանսիական կառավարությունը 1947 թ. մինչև 1950 թվականը ռազմական նպատակների համար ծախսեց ավելի քան 2.000 միլիարդ ֆրանկ։ Մոտավորապես այդիսկ ժամանակաշրջանում՝ 1947 թվականի հունվարից մինչև 1951 թվականի ապրիլ ամիսը, Ֆրանսիայում գները բարձրացան. մսինը՝ համարյա 2 անգամ, շաքարինը՝ 2,3 անգամ, կարագինը՝ 29 տոկոսով, բուսական յուղինը՝ համարյա երկու անգամ, հացինը՝ ավելի քան 65 տոկոսով, կարտոֆիլինը՝ 2,5 անգամ, կաթինը՝ 80 տոկոսով։ Իսկ ինչ վերաբերում է արդյունաբերական ապրանքներին, ապա այդ նույն ժամանակամիջոցում տղամարդկանց կոստյումների գները բարձրացան 3,3 անգամ, կոշկեղենինը՝ ավելի քան երկու անգամ, տղամարդու վերարկուինը՝ 2,3 անգամ և այլն։

✪ Կապիտալիստական երկրներում, սպառազինությունների մրցավազքի հետևանքով, կրճատվում է քաղաքացիական արդյունաբերությունը, փակվում են խաղաղ արտադրանք թողարկող ձեռնարկությունները, աճում է գործազրկությունը։ Այսպես. վերջին չորս տարիների ընթացքում Բելգիայում գործազրկությունն ավելացավ 3 և կես անգամ, Նորվեգիայում և Դանիայում՝ 3 անգամ, Իտալիայում՝ մեկ և կես անգամ, Արևմտյան Գերմանիայում՝ 3 անգամ, Ավստրիայում՝ 7 անգամ։ Գործազրկությունն աճեց նաև ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում և այլ երկրներում։ Արևմտյան Գերմանիայում և Իտալիայում գործազրկությունն այնպիսի չափեր է ընդունել, ինչպիսին գոյություն ուներ 1929—1933 թվականների՝ ամենաուժեղ տնտեսական ճգնաժամի տարիներին։ Ճապոնիայում գործազուրկների և կիսագործազուրկների թիվը հասնում է 18 միլիոն մարդու։

✪ Պատերազմի քաղաքականությունը, աղքատության և սովի քաղաքականությունը, որ անց են կացնում իմպերիալիստները, կապիտալիստական երկրների աշխատա-



վորների մեջ գնալով աճող բողոք է առաջ բերում։ Հացի համար մղվող պայքարը գնալով ավելի ու ավելի սերտորեն է միաձուլվում խաղաղության համար մղվող պայքարի հետ։ Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Դիմումի տակ իրենց ստորագրություններն են դրել Ֆրանսիայի 7 միլիոն աշխատավորներ, 12 միլիոն իտալացիներ, մոտ 5 և կես միլիոն ճապոնացիներ, մեծ թվով անգլիացիներ, հոլանդացիներ, դանիացիներ։ Կապիտալիստական երկրների աշխատավորները, չնայած ռեակցիոն կառավարությունների հետապնդումներին, ուժեղացնում են պայքարը խաղաղության համար, ընդդեմ պատերազմի հրձիգների հանցագործ մեքենայությունների։

# ՎՅԵՏՆԱՄԻ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ

Երկրորդ համաշխարհային պատերազմի վերջում խաղաղության ու դեմոկրատիայի ճակատի քարտեզի վրա ավելացավ մի երկիր ևս—Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան։ Այդ ռեսպուբլիկայի, ինչպես և 600 միլիոնից ավելի բնակչություն ընդգրկող մյուս բոլոր ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկաների առաջացումը ուղղակի հետևանք էր այն բանի, որ Սովետական Զինված Ուժերի հարվածների տակ խորտակվեցին իմպերիալիստական ագրեսիայի օջախները ինչպես արևմուտքում՝ հանձին հիտլերյան Գերմանիայի, այնպես էլ արևելքում՝ հանձին միլիտարիստական Ճապոնիայի։

Սովետական ժողովրդի ու նրա բանակի այդ համաշխարհային պատմական հաղթանակներով թևավորված, բոլոր ազատասեր ժողովուրդները, այդ թվում և Ասիայի գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդները, ուքի ելան արտաքին ու ներքին ճնշողների ու կեղեքիչների դեմ և իրենց ավանդարդ կոմու-



նիստական ու բանվորական պարտիաների ղեկավարությամբ պայքար ծավալեցին հանուն իրենց ազգային ու սոցիալական ազատագրության, հանուն դեմոկրատիայի, հանուն խաղաղ ու երջանիկ կյանքի։

Վեց տարվա համառ ու հերոսական մարտերի ընթացքում Վյետնամի ժողովուրդը, կոմունիստական պարտիայի ու իր փորձված առաջնորդ Խո Շի Մինի ղեկավարությամբ, երկրի տերիտորիայի ավելի քան 90 տոկոսը մաքրելով ֆրանս-ամերիկյան իմպերիալիստների ու նրանց բաոդայական կամակատարների բանդաներից, հասել է վիթխարի նվաճումների, ինչպես ռազմա-քաղաքական, այնպես և տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում։

Վյետնամը իր աշխարհագրական դիրքով ու բնական հարստություններով վաղուց է գրավել իմպերիալիստական պետությունների ուշադրությունը։ Անցյալ դարի կեսերին ֆրանսիական իմպերիալիստները, ներխուժելով Հնդկաչին, գրավեցին Վյետնամը և նրա հարևան Լաոսն ու Կամբոջան։

Վյետնամը, որ տեղական լեզվով նշանակում է հարավի երկիր, երկու հազար կիլոմետր երկարությամբ ձգվում է Հնդկաչինի ամբողջ արևելյան մասով, գրավելով մոտ 350 հազար քառակուսի կիլոմետր տարածություն։ Նա հյուսիսից սահմանակից է Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային, արևելքից

ու հարավից ողողվում է Տոնկինյան ծոցի, Հարավչինական ծովի ու Խաղաղ օվկիանոսի ջրերով, իսկ արևմուտքից սահմանակից է Կամբոջային ու Լաոսին։

Վյետնամի բնակչության թիվը հասնում է 22 միլիոնի, որից 20 միլիոնը ապրում է Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ազատագրված տերիտորիայում։ Երկրի բնակիչների մեծ մասը աննամիտներ են։

Բնական հարստություններից առանձնապես աչքի են ընկնում քարածխի, երկաթի ու ոսկու մեծ պաշարները, կաուչուկի և բրնձի կուլտուրաների վիթխարի տարածությունները։ Իրենց ձեռքը վերցնելով այս բոլոր հարստությունները ֆրանսիական գաղութարարները էժան բանվորական ուժի գործադրման միջոցով մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը երկրից տարեկան քամում էին առնվազն մեկ և կես միլիարդ ֆրանկ գերշահույթ։

Երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում Վյետնամը, հեռավոր արևելյան շատ երկրների նման, ընկավ ճապոնական ագրեսորների լծի տակ, որից ազատագրվեց միայն այն ժամանակ, երբ Սովետական Բանակի հուժկու հարվածների տակ խորտակվեց ճապոնական իմպերիալիստների ամենաընտիր զորամասերից բաղկացած Կվանտունյան բանակը և թշնամին հարկադրված եղավ կապիտուլյացիայի ենթարկվել։ 1945 թվականի օգոստոսի 19-ին կոմունիստական



պարտիայի և նրա առաջնորդ Խո Շի Մինի ղեկավարությամբ ճապոնական օկուպանտների ու նրանց հետ գործակցող ֆրանսիական գաղութարարների դեմ երկրում բռնկվեց համաժողովրդական հաղթական ապստամբություն, որի հետևանքով ստեղծվեց Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան։ Վյետնամի անկախության համար պայքարի Լիգայում՝ Վյետմինում համախմբված ռևոլյուցիոն և հայրենասիրական կազմակերպությունները ստեղծեցին Վյետնամի ժամանակավոր ժողովրդական կառավարություն Խո Շի Մինի գլխավորությամբ։ Այդ կառավարությունը երկու շաբաթից հետո՝ սեպտեմբերի 2-ին հրապարակեց «Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի անկախության Դեկլարացիան»։ Այդ պատճառով սեպտեմբերի 2-ը ամեն տարի Վյետնամի ժողովուրդը տոնում է, որպես Անկախության օր։

Շուտով անգլիական ու ֆրանսիական իմպերիալիստները, ճապոնական զինված ուժերի զինաթափման պատրվակով, սկսեցին Վյետնամի հարավում ափ դուրս բերել զորքեր և 1945 թվականի սեպտեմբերի 23-ից կազմակերպեցին հարձակում Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի դեմ, նպատակ ունենալով վերականգնել իմպերիալիստական-գաղութային տիրապետությունը այդ երկրում։ Իմպերիալիստական զավթիչները, ունենալով տեխնիկայի վիթխարի գերակշռություն, կես տարի շարունակ մարտեր մղելով հազիվ

կարողացան գրավել Հարավային Վյետնամի մի մասը։ Վյետնամի երիտասարդ ժողովրդական բանակը, հերոսական դիմադրություն ցույց տալով անգլո-ֆրանս-ճապոնական զավթիչներին, կանգնեցրեց թշնամիների հարձակումը և շուտով ինքը անցավ հակահարձակման։

Իմպերիալիստները, համոզվելով, որ լոկ ռազմական ուժով հնարավոր չէ ընկճել Վյետնամի ժողովրդի դիմադրությունը, դիմեցին խորամանկ միջոցների։ Նրանք մի կողմից բանակցություններ վարեցին Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարության հետ, նպատակ ունենալով այդ միջոցով ժամանակ շահել՝ խոշոր քանակությամբ նոր զինված ուժեր Վյետնամ փոխադրելու և նոր հարձակում նախապատրաստելու համար, մյուս կողմից՝ ջանք թափեցին իրենց շուրջը համախմբելու Վյետնամի ներքին հակաժողովրդական-ռեակցիոն տարրերին, նպատակ ունենալով ջլատել ժողովրդի ուժերը, և այդ տարրերի միջոցով իրենց համար սոցիալական հենարան ստեղծել երկրի ներսում։

Ֆրանսիական իմպերիալիստները, հավաքագրելով գերմանական նախկին էսէսական զորամասերի մնացորդներին և ստանալով ամերիկյան տերերի ու գոմինդանական Չինաստանի լայն աջակցությունը, 1946 թվականի դեկտեմբերի 19-ին, կուտակված խոշոր ուժերով ուխտադրժորեն ու հանկարծակի հարձակվեցին Վյետնամի վրա՝ այս անգամ հյուսիսից, նպատակ



ունենալով արագությամբ զավթել երկրի արդյունաբերական ու նավահանգստային կենտրոնները, բոլոր բերքառատ վայրերը և խեղդել երիտասարդ դեմոկրատական ռեսպուբլիկան։ Հանկարծակի հարձակման հետևանքով թշնամուն հաջողվեց գրավել ռեսպուբլիկայի մայրաքաղաք Խանոյը և մի շարք այլ քաղաքներ և առաջ շարժվել դեպի երկրի խորքը։ Սակայն Վյետնամի ժողովրդական բանակի հերոսական դիմադրության հետևանքով թշնամու առաջխաղացումը կասեցվեց և ձախողվեց ռեսպուբլիկան զավթելու իմպերիալիստական պլանը։

Ֆրանսիական իմպերիալիստները Խանոյում ստեղծեցին մի մարիոնետային կառավարություն՝ գեներալ Նգուեն Կսյուանի գլխավորությամբ։ Հետագայում, ամերիկյան իմպերիալիստական տերերի թելադրանքով, այդ «կառավարության» գլուխ նշանակվեց 1945 թվականին գահից հրաժարված կայսր Բաո Դայը, որին շտապեցին ճանաչել բոլոր իմպերիալիստական պետությունները՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների ու Անգլիայի գլխավորությամբ։

Վյետնամի երիտասարդ Դեմոկրատական Ռեսպուբլիկան մեկուսացնելու և բլոկադայի ենթարկելու ֆրանս-ամերիկյան իմպերիալիստական պլաններին խորտակիչ հարված հանդիսացավ խաղաղության ու դեմոկրատիայի անսասան պատվար Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ու ժողովրդական դեմոկրատիայի երկրների կողմից

Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ճանաչումը և նրա հետ դիվանագիտական ու առևտրական կապերի հաստատումը։

Վյետնամի ժողովրդական բանակը, համեմատաբար կարճ ժամանակամիջոցում, իր նախկին դանակների ու բամբուկե նիզակների փոխարեն վերազինվելով թշնամուց խլած ու սեփական երկրում արտադրվող նորագույն տեխնիկայով ու հանդերձանքով, ստանալով ամբողջ ժողովրդի ամենաակտիվ աջակցությունը, կարողացավ ոչ միայն կասեցնել մինչև ատամները զինված թշնամու հարձակումը, այլև նախապատրաստել և անցկացնել հակահարձակողական խոշոր գործողություններ։ Առանձնապես մեծ հաղթանակներ նա ձեռք բերեց 1950 թվականի ընթացքում, երբ ամերիկյան իմպերիալիստները նախապատրաստվում էին հարավից հարձակվել Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի վրա՝ իրենց համար որպես պլացդարմ ընտրելով Հյուսիսային Վյետնամը։ Ամենքին արդեն հայտնի են Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտ Տրումենի, նոր պատերազմի հրձիգների այդ պարագլխի 1950 թվականի հունիսի 27-ի հրամանը՝ ֆրանսիական օկուպանտներին ցույց տրվելիք օգնությունը ուժեղացնելու և Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի դեմ նորանոր ուժեր ուղարկելու մասին։ Այդ տխրահռչակ հրամանը տրվեց այն ժամանակ, երբ Կորեական Ժողովրդական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի դեմ սկսված ամերիկյան ագրեսիվ



գործողություններից անցել էր երկու օր։ Կասկածից դուրս է, որ տրումենյան այդ հրամանը Ասիայում ամերիկյան ագրեսիայի ծավալման ընդհանուր պլանի օղակներից մեկն էր հանդիսանում։

Սակայն ամերիկյան իմպերիալիզմի այդ դավադրական պլանը վիժեց Վյետնամի ժողովրդական բանակի այն լայն հարձակողական գործողություններով, որոնք ծավալվեցին 1950 թվականի սեպտեմբերին։ Ֆրանս-ամերիկյան ինտերվենտների դեմ ծավալված հաջող հարձակման հետևանքով ժողովրդական բանակը Հյուսիսային Վյետնամում շուտով ազատագրեց այնպիսի կարևոր ստրատեգիական կետեր, ինչպիսիք են Կաո-Բանգը՝ համանուն պրովինցիայի մայրաքաղաքը, Դոնգ-խե, Տայ-Նգուեն, Տատ-Խե, Նա-Շամ, Լաո-Կայ, Լանգ-Սոնն և այլ քաղաքներ ու խոշոր բնակավայրեր։

Չինաստանին սահմանակից հյուսիսային ռայոնները ազատագրելուց և Չինաստանը ներխուժելու ամերիկյան պլանները վիժեցնելուց հետո ժողովրդական բանակը իր գլխավոր հարվածը փոխադրեց դեպի Կարմիր գետի արգավանդ հովիտը, պայքար մղելով բրնձի ու այլ սննդամթերքների արտադրության այդ գլխավոր կենտրոնի ազատագրման համար։ 1951 թվականի սկզբից ծավալելով հարձակում այդ ուղղությամբ, ժողովրդական բանակը ծանր, կործանիչ հարվածներ հասցրեց ֆրանս-ամերիկյան նորանոր համալրումներ ստացող ուժերին և ազատագրեց Կար-

միր գետի դելտայում գտնվող նշանավոր քաղաքներից մեկը՝ Նին-Բինը իր շրջակա խիտ բնակեցված ընդարձակ տերիտորիայի հետ միասին։

Այս տարի հաջող ռազմական գործողություններ ծավալվեցին նաև երկրի հարավում՝ Սայգոն քաղաքի ռայոնում և այլ վայրերում։

Չի կարելի չնշել այն վիթխարի պայքարը, որ մղում են վյետնամցի հայրենասեր-վրիժառուները՝ պարտիզանները թշնամու օկուպացրած վայրերում։ Թշնամու թիկունքում բազմաթիվ գյուղեր ու ամբողջական ռայոններ վերածվել են դիմադրության օջախների, ուր զինված բնակչությունը, նախօրոք պատրաստված ամրությունների և ստորերկրյա անցքերի միջոցով, խոշոր հարվածներ է հասցնում թշնամուն, ջլատում է նրա ուժերը, ահաբեկում է մտցնում նրա շարքերում։

Վյետնամի ժողովուրդը, ծանր պայքար մղելով մինչև ատամները զինված ֆրանս-ամերիկյան իմպերիալիստների զինված ուժերի դեմ, միաժամանակ բուռն եռանդով լծվել է իր հայրենիքի քաղաքական, տնտեսական ու կուլտուրական վերափոխության աշխատանքներին։

1946 թվականի նոյեմբերին ընդունված կոնստիտուցիայի հիման վրա երկիրը հռչակված է դեմոկրատական ռեսպուբլիկա, ուր իշխանությունը պատկանում է ժողովրդին։ Ըստ կոնստիտուցիայի, երկրում սահմանված իշխանության բոլոր օրգանները ընտրո-



վի են վերևից մինչև ներքև՝ ազատ, ուղղակի և գաղտնի քվեարկությամբ։ Պետական նոր կարգի հիմքն են հանդիսանում ժողովրդական կոմիտեները, որոնք գաղտնի քվեարկությամբ ընտրվում են յուրաքանչյուր վարչական միավորի՝ մարզի, օկրուգի, ռայոնի, քաղաքի, գյուղի համար։

Ֆրանսիական ու ճապոնական իմպերիալիստներից Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան ժառանգություն ստացավ հիմնովին ավերված ժողովրդական տնտեսություն, որի վերականգնման ու զարգացման աշխատանքները կազմում են ժողովրդական կառավարության և ամբողջ Վյետնամի աշխատավորների հոգսի առարկան։ Ժողովրդական կառավարության խոշոր հաղթանակներից մեկը հանդիսացավ այն, որ նա կարողացավ պատերազմի դժվարին պայմաններում կազմակերպել համաժողովրդական պայքար սովի դեմ, որ ստեղծվել էր երկրում ինչպես իրար հաջորդող մի շարք տարիների անբերրիության, այնպես և ամերիկա-ֆրանսիական իմպերիալիստների բլոկադայի ու ցանքերի գազանային հրդեհումների ու ավերումների հետևանքով։

Այդ դժվարին պայմաններում ժողովրդական կառավարությունը կարողացավ իրագործել երկրի դեմոկրատական վերափոխումների մեջ ամենահիմնական ու կենսական խնդիրներից մեկը՝ ագրարային ռեֆորմը։ Այդ ռեֆորմի հետևանքով ֆրանսիական գաղութարարների ու դավաճան կալվածատերերի

հողերը բռնագրավվեցին և բաժանվեցին հողազուրկ ու աղքատ գյուղացիներին։ Խոշոր չափով իջեցվեց հողերի արենդավճարը։ Արգելվեց վաշխառությունը և կազմակերպվեց գյուղացիական լայն մասսաներին օգնելու, նրանց վարկեր բաց թողնելու գործը։ Հիմնովին փոխվեց հարկային սիստեմը՝ աշխատավոր գյուղացիների վրայից վերցվեց նախկին ծանր հարկային բեռը։ Մեծ մասշտաբի աշխատանքներ են տարվում ջրանցքների ու ոռոգման սիստեմների վերանորոգման ու նորերի կառուցման ուղղությամբ։

Ժողովրդական կառավարությունը, Ռեսպուբլիկայի պրեզիդենտ Խո Շի Մինի գլխավորությամբ, խոշոր աշխատանք է ծավալում նաև արդյունաբերական ձեռնարկությունների ստեղծման և բանվորների նյութական-կենցաղային պայմանների բարելավման ասպարեզում։ Հատուկ օրենքով մտցված են վճարովի արձակուրդներ, նպաստներ՝ հիվանդության դեպքում, սոցիալական ապահովագրություն, արձակուրդներ հղի կանանց համար, «Հավասար աշխատանքին հավասար վարձատրություն» սկզբունքի կիրառում բոլորի նկատմամբ և այլն։

Վյետնամում այժմ մոտավորապես մեկ միլիոն բանվորներ ընդգրկված են պրոֆմիություններում, որոնք գլխավորում են բանվորների հայրենասիրական մրցությունը հանուն աշխատանքի արտադրողականության բարձրացման, հանուն ռազմաճակատին ցույց տրվող օգնության աճման։



Երկրում խոշոր աշխատանքներ են կատարվում ժողովրդական կրթության ու կուլտուրայի զարգացման գործում։ Բացվել են հազարավոր դպրոցներ, ուր սովորում են միլիոնավոր երեխաներ։ Է՛լ ավելի լայն չափով ծավալվել է անգրագիտության վերացման աշխատանքը։ Բավական է ասել, որ դեռևս մինչև 1949 թվականը բացված լիկկայաններում իրենց անգրագիտությունը վերացրել են ավելի քան վեց միլիոն աշխատավորներ։

Գնալով է՛լ ավելի համախմբված ու թշնամու դեմ կուռ բռունցք է դառնում Վյետնամի ժողովուրդը։ Այդ բնագավառում նշանակալից երևույթ է այս տարվա փետրվարին մարքսիզմ-լենինիզմի հիմունքներով աշխատանքային պարտիայի ստեղծումը, որը կոչված է ղեկավարելու բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների պայքարը ընդդեմ արտաքին ու ներքին թշնամիների։ Նշանակալից է երկու մասսայական կազմակերպությունների՝ Վյետնամի անկախության համար պայքարի Լիգայի (Վյետմինի) և Ազգային միության (Լյեն-Վյետի) միաձուլումը մեկ ընդհանուր կազմակերպության մեջ, որ կոչվում է Վյետնամի ազգային միացյալ ճակատ։ Նշանակալից է նաև այն երևույթը, որ այս տարվա մարտ ամսում երեք հարևան երկրների՝ Վյետնամի, Լաոսի և Կամբոջայի ներկայացուցիչները ստեղծեցին միացյալ ազգային ճակատ,

որն իր նպատակն է դնում ամբողջ Հնդկաչինի ազատագրումը օտարերկրյա զավթիչներից։

Վյետնամի դեմոկրատական ռեսպուբլիկայի պրեզիդենտ Խո Շի Մինը իր վերջին ելույթներից մեկում ասաց. «Դիմադրության շարժման ծագման մոմենտից սկսած ձեռք են բերվել խոշոր հաջողություններ ռազմական, կուլտուրական և դիվանագիտական ասպարեզներում։ Մոտենում է այն ժամը, երբ զավթիչները դուրս կշպրտվեն մեր երկրի սահմաններից»։

Այո, հեռու չէ այն ժամանակը, երբ իրենց ազատագրության համար ոտքի ելած Հնդկաչինի ժողովուրդները ձեռք կբերեն իրենց բաղձալի հաղթանակը։ Այդ ժողովուրդների պայքարը անբաժան մասն է կազմում այն ընդհանուր պայքարի, որ ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդիկ ժողովուրդների մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի գլխավորությամբ մղում են հանուն խաղաղության, հանուն դեմոկրատիայի, հանուն սոցիալիզմի։

Հ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

---



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀՈԿՏԵՄԲԵՐ ԱՄՍԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ (ԼՐԱՑՈՒՑԻՉ)

## I

## Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆԵՐՆ ՈՒ ՈԳԵՇՆՉՈՂՆԵՐՆ ԵՆ

1. Լենինը և Ստալինը բոլշևիկյան պարտիայի կազմակերպիչներն ու առաջնորդներն են։

2. Բոլշևիկյան պարտիայի և նրա առաջնորդներ՝ Վ. Ի. Լենինի ու Ի. Վ. Ստալինի ղեկավար դերը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման և անցկացման գործում։

3. Ընկեր Ստալինի հանճարեղ ղեկավարությամբ սովետական ժողովրդի ձեռք բերած նվաճումները կոմունիզմի կառուցման գործում։

4. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պատմական նշանակությունը։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց: *Գլուխ 7, էջ 249—257 և 268—280: Համառոտ եզրակացություններ: Հայպետհրատ 1948 թ.:*

Վ. Ի. Լենինի կյանքի և գործունեության համառոտ ուրվագծերը: *Գլուխ 9:*

Ի. Վ. Ստալինի համառոտ կենսագրությունը: *Գլուխ 5-րդ:*

Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի մեծ առաջնորդը և ուսուցիչը: *«Ս. Հ.», 1949 թ. 16 դեկտեմբերի:*

Ստալինյան էպոխայի մեծ կառուցումները: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով:*

## II

## Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՄԵԾ ԴՐՈՇԱԿԱԿԻՐՆ Է

*1. Ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը, երկարատև և ամուր խաղաղության ապահովելու իր հույսերը կապում է մեծ Ստալինի անվան հետ:*

*2. Լենինն ու Ստալինը որպես սովետական սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության ստեղծողներ և ղեկավարներ:*

*3. Խաղաղության մասին Դեկրետը՝ Սովետական իշխանության արտաքին քաղաքականության առաջին ակտն է:*



*4. Սովետական իշխանության պայքարը հանուն կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության:*

*5. Ի. Վ. Ստալինը ժողովուրդների խնդիրների մասին՝ նոր պատերազմի հրձիգների դեմ պայքարում:*

*6. Սովետական պետության հզորության ամրապնդումը խաղաղության համար մղվող պայքարի ստալինյան արտաքին քաղաքականության հաջողության հիմքն է:*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ «ՊՐԱՎԴԱ»-ի* թղթակցին ատոմային զենքի վերաբերյալ: *«Ագիտատորի բլոկնոտ» № 19:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի նախընտրական ժողովում 1946 թ. փետրվարի 9-ին: *Հայպետհրատ առանձին բրոշյուրով, էջ 7—17:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Զրույց «Պրավդա»-ի թղթակցի հետ: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով 1951 թ.:*

Ի. Վ. Ստալին.— Չինաստանի Ժողովրդական Ռեսպուբլիկայի կենտրոնական ժողովրդական կառավարության նախագահ ընկեր Մաո Ցզե-դունին: *«Ս. Հ.» 1951 թ. սեպտեմբերի 3:*

Ընկեր Ստալինին— Մեծ առաջնորդին և ուսուցչին, Լենինի անմահ գործի շարունակողին: *«Պար-*

տիական կյանք» № 12, 1949 թ., «Ս. Հ.», 1949 թ. դեկտեմբերի 16։

Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի մեծ առաջնորդը և ուսուցիչը: «Ս. Հ.», 1949 թ. 16 դեկտեմբերի։

## III

## ՕՐԻՆԱԿԵԼԻՈՐԵՆ ԱՆՑԿԱՑՆԵԼ ԱՇՆԱՆԱՅԻՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ

1. Աշնանացանը ագրոտեխնիկական բոլոր կանոններով և կազմակերպված ձևով անցկացնելը՝ 1952 թ. բարձր բերքի նախապայմանն է։

2. Հացահատիկային բոլոր կուլտուրաների համար բարձրորակ սերմացու նախապատրաստելը և գյուղատնտեսական մեքենաների, գործիքների անխափան օգտագործումը կոլտնտեսությունների առաջնահերթ խնդիրն է։

3. Տեղական և հանքային պարարտանյութերի օգտագործումը ագրոտեխնիկական ճիշտ կանոններով բարձր բերք ստանալու կարևոր պայմանն է։

4. Գյուղատնտեսական աշնանային աշխատանքները սեղմ ժամկետում և բարձր որակով ավարտելը՝ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և գյուղատնտեսության բնագավառի բոլոր աշխատողների պատվի գործն է։



5. Կոլտնտեսությունների կազմակերպչական-տնտեսական ամրապնդումը և գյուղատնտեսական տեխնիկան բարձր արտադրողականությամբ օգտագործելը՝ բոլոր կոլտնտեսությունների, ՄՏԿ-ների, և սովխոզների աշխատավորության առաջնահերթ խնդիրն է։

6. Ինչպե՞ս է մեր կոլտնտեսությունում, սովխոզում, ՄՏԿ-ում ծավալվում սոցիալիստական մրցությունը՝ աշնան գյուղատնտեսական աշխատանքները ժամկետին և բարձր որակով ավարտելու համար։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ժամանակին կատարել աշնանացանը: «Ս. Հ.»-ի 1951 թ. օգոստոսի 5-ի առաջնորդողը։

За высокий урожай озимой пшеницы. «Коммунист», 16 августа 1951 г.

## IV

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

1. Ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկաների ստեղծումը՝ հիտլերյան Գերմանիայի նկատմամբ Սովետական Միության տարած համաշխարհային պատմական հաղթանակի արդյունքն է։

2. ՍՍՌՄ-ի սոցիալիստական շինարարության հարուստ փորձի օգտագործումը, Սովետական Միության բարեկամությունը և անշահախնդիր օգնությունը՝ ժողովրդա-դեմոկրատական երկրներում սոցիալիզմի հաջող կառուցման կարևորագույն պայմանն է։

3. Սոցիալիստական սեկտորի հաղթանակը արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ՝ ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկաներում։

4. Աշխատավոր մասսաների բարեկեցության բարձրացումը և գիտության ու կուլտուրայի զարգացման հաջողությունները ժողովրդա-դեմոկրատական երկրներում։

5. Ժողովրդական դեմոկրատիայի երկրների կոմունիստական պարտիաների դերը սոցիալիստական հասարակարգի կառուցման և ամբողջ աշխարհում կայուն խաղաղություն հաստատելու համար մղվող պայքարում։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ընկ. Կ. Ե. Վորոշիլովի ճառը Բուխարեստում տեղի ունեցած հանդիսավոր նիստում, նվիրված Սովետական Բանակի կողմից Ռումինիայի ազատագրման 7-րդ տարեդարձին: *«Ս. Հ.», 1951 թ. օգոստոսի 24։*

Սովետական Բանակի կողմից Բուլղարիայի ազատագրման 7-րդ տարեդարձը: *«Ս. Հ.», 1951 թ. սեպտեմբերի 11։*



Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայի հնգամյակը: *«Ս. Հ.», 1951 թ. սեպտեմբերի 15։*

Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրները սոցիալիզմի ուղու վրա: *Առանձին բրոշյուրով, Հայկական ՍՍՌ ԳԱ հրատարակություն, 1950 թ.։*

Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսական հարաբերությունների ամրապնդումը: *«Ս. Հ.», 1951 թ. հոկտեմբերի 4։*

Новый под'ем экономики и культуры стран лагеря демократии и социализма. «Коммунист», 16 августа 1951 г.

Пятилетний план развития народного хозяйства Албании. «Правда», 27 сентября 1951 г.

---



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Ռ. ԼԱՎՐՈՎ.— ՌԿ(բ)Պ Համառուսաստանյան տասներորդ կոնֆերենցիան: *63 էջ, գինը 80 կոպ.։*

Գ. Վ. ԶԱԼՈՒՑԿԻ.— Ավիացիոն պարաշյուտի գյուտարար Գ. Ե. Կոտելնիկով: *128 էջ, գինը 1 ռ. 65 կոպ.։*

Գ. Վ. ՑԱՆԻԿՈՎ.— Հյուսիսային մեծ էքսպեդիցիան: *212 էջ, գինը 4 ռ. 50 կոպ.։*

ԳԱՐԵԳԻՆ ՀՈՎՍԵՓՅԱՆ.— Ստեփան Զորյանի ստեղծագործությունները: *247 էջ, գինը 6 ռ. 65 կոպ.։*

Վ. ԱՆԱՆՅԱՆ.— Ձերմայի մարդիկ: *316 էջ, գինը 3 ռ. 35 կոպ.։*

ԱՐՏՅՈՄ ՇԱՀԲԱԶ.—Ակնարկներ և պատմվածքներ: *129 էջ, գինը 4 ռ.։*

---

Պատ. խմբագրի տեղակալ՝ Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

*ՎՖ 04845 Պատվեր № 870 Տիրաժ 9250*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան: Երևան*

